Այրի Տիկ. Աղաւնի Խաչերեան եւ զաւակք Սելինէ եւ Սօնա Խաչերեան, (Փարիզ), Տէր եւ Տիկ. Խաչիկ Խաչերեան (Պուքովինա), Այրի Տիկ. Արման Գազազեան (Մարսէյլ). Տէր եւ Տիկ. Արթաքի Ղազարոսեան եւ զաւակունք (Փարիզ), Տէր եւ Տիկ. Խաչիկ Խաչատուրեան եւ զաւակունք, Տեարք Ղազարոս Յակոբ Խաչատուրեան եղբարք (Փարիզ), Տէր եւ Տիկ. Թորգոմ Փափազեան եւ զաւակունք (Հռոմ), Տէր եւ Տիկ. Օ. Պալըգճեան եւ զաւակը (Փարիզ), Օր. Աստղիկ Խաչատուրեան (Պոլիս), Տէր եւ Տիկ. Մ. Աշճեան եւ զաւակունք (Մարսէյլ), Պ. Յ. Համբարձումեան (Պոլիս), Այրի Տիկ. Աղաւնի Ազարեան (Փարիզ), Այրի Տիկ. Հռիփսիմէ Խաչատուրեան, Պ. Խաչիկ Խաչատուրեան, Այրի Տիկ. Մարիամ Գասպարեան եւ զաւակը (Քանթին), ինչպէս նաեւ Սարգիսեան. Տէր Ներսէսեան, Մէնգիլճեան, Միքայէլեան, Արթինեան, Ֆէնէրճեան, Գասպարեան, Պօտուրեան, Ապաճեան, Գաբրիէլեան, Միսաքեան, Պալըգճեան ընտանիքները, ցաւօք սրտի կը ծանուցանեն դառնաղէտ մահը իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, փեսին, քեռայրին, քեռորդւոյն, քենեկալին եւ ազգականին՝

## ՅԱԿՈԲ ԽԱՉԵՐԵԱՆԻ

(ԻԶՄԻԹՑԻ)

որ տեղի ունեցաւ 29 դեկտ. 1931, Tenon հիւանդանոցը, յետ կարճատեւ եւ տաժանելի հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, ուրբաթ, 1 յունուար 1932 ժամը 15ին, Pantinի գերեզմանատունը: Հաւաքում յուղարկաւորներու, Թրնոն հիւանդանոցի ելքի դուռը 47 Rue Pelleport Paris, (20e)

Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

Հաղորդակցութեան միջոց. Aut. BG., O bis, մէթրօ: Gambetta, թրամվէյ՝ 26, 95, A եւ B.

## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

«Սիփան» երկսեռ երգչախումբի կողմէ, ղեկավար՝ ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆ

*Պատրաստուեցէք եւ ապահովեցէք ձեր տոմսերը*

Նախօրօք՝ 12.50, երեկոյթին գիշերը 15 ֆրանք

2 յունուար, շաբաթ իրիկուն, ժամը 9էն մինչեւ լոյս, Victor Hugoի շքեղ սրահին մէջ, 46 ter Rue St. Didier, մէթրօ Վիքթոր Հիւկօ:

գեղարուեստական ճոխ բաժին

*Նոր պարեր՝ Օր. Մաքտօնալտի (Շաթլէի Թատրոնէն) եւ իր քրոջ կողմէ: Պարեր երկսեռ խումբով եւ հայկական տարազով: Անակնկալներ: Պարողներուն աչքը լոյս, եւրոպական պարեր կէս գիշերէն մինչեւ առաւօտ, մասնակցութեամբ* ջոլիզէումի *նշանաւոր* Pesenti *նուագախումբի:*

*ԽՄԲԵՐԳ՝ Առաւօտեան բարի լոյս, Հով լինի՝ Կոմիտաս Վարդապետի, Հօյն Անուշ՝ Սպ. Մելիքեանի, Տանում են աղէջան, Ալագեազ, Խնկի ծառ՝ Գ. Սիւնիի, Անձրեւն եկաւ, Շողեր ջան, Եար ջան արի, էս օր ուրբաթ է, Ջուր կուգայ, Սարէն եկաւ, Գնա գնա, Սոնա եար, եւ այլն:*

*ՍԻՓԱՆ երգչախումբը կը հրաւիրէ հասարակութիւնը խրախուսել իր ձեռնարկը: Հայ երիտասարդներ եւ երիտասարդուհիներ անդամագրուեցէք «Սիփան» երգչախումբին:*

*Տոմսերու համար դիմել՝ «Յառաջ»ի, «Կավռօշ»ի, Գրատուն Հրանտ-Սամուէլ* (61 rue Mr. le Prince *Ֆլօրիա ճաշարան, Լ. Նշանեան* (56 rue Piat, *Նպարավաճառատուն Աւետիսեան* 28 rue de la Huchette, *Սափրիչ Ստեփանեան* 8 rue Domat, *Սափրիչ Գէորգեան* 24 rue St. Lazare.

## Խնջոյք եւր տարուան առթիւ

կազմակերպուած Սեբաստիոյ թաղրայի հայրենակցական միութեան կողմէ: Այսօր Ուրբաթ, կէսօրէ վերջ, ժամը 2ին, 20 Ave. Ville d'Avray Շավիլ: Թրամուէյ վերսայլ թիւ 1 իջնել Puits, sans Vin շոգեկառք՝ Invalidesէն Շավիլ-Վէլիզի- Սէն Լազարէն եւ Մօնփարնասէն Շավիլ:

կը հրաւիրուին հայրենակիցներ — Մուտքը ազատ է

## ԲՈՂՈՔԻ ՄԻԹԻՆԿ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

եղերամահ Հ. ճանիկեանի (վ.իտինեան) արիւնոտ դատին համար

Այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին, Թափի վերի սինէմայի սրահին մէջ: Հովանաւորութեամբ *Mr. Marius Masse*ի, *Vice président du Conseil d'Arrondissement*ի: կազմակերպուած հայ քաղ. կուսակցութեանց, 24 Հայր. միութեանց եւ 5 մշակութային կազմակերպութեանց խառն ժողովին կողմէ:

Ներկայ պիտի ըլլան ֆրանսացի բարձրաստիճան անձնաւորութիւններ, ֆրանսական թերթերու թղթակիցներ: կը խօսին հայ քաղ. կազմակերպութեանց ներկայացուցիչները՝ կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

Մ ո ւ տ ք ը   ա զ ա տ   է

## Տ Օ Ն Ա Ծ Ա Ռ

Ա. Ե. Հ. Կ. խաչի փարիզի «Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղի

Այս կիրակի *Maison Mutualitéի* մէջ, *24 Rue St. Victor, Métro Maubert-Mutualité*. Մասնակցութեամբ գայլիկներու եւ արէցներու: Մանուկներու ներկայացում եւ խաղեր: կաղանդ պապան նուէրներ կը բաժնէ:

Մուտքը ազատ է — Տախսերու մասնակցութիւն 2 ֆրանք









## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՑԻՄՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

*17 Յունուար կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին* **Salle de la Mutualité**ի մէջ

**24, Rue St. Victor, Paris (5), Métro: Place Maubert-Mutualité**

*Վարժարանի Սանուց Միութիւնը կը կազմակերպէ Գեղարուեստական հանդէս մը*

բարեհաճ մասնակցութեամբ ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ, ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ, ՊՊ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ, Է. ՓԱՓԱԶԵԱՆԻ եւ ՏԷՎԷՃԵԱՆԻ

կ'երգէ վարժարանին 80 հոգինոց երգչախումբը, ղեկավարութեամբ Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ

կը բեմադրուի Ա. Պատմագրեանի յատկապէս այս հանդէսին համար պատրաստած «ՀԷՔԵԱԹ» մանկական երաժշտական պիէսը, որուն գլխաւոր դ... ը կ'երգեն Ռօզ Պատմագրեան, Պ. Պ. Փափազեան, Տէվէճեան եւ *Jacques BENOISTON Théâtre Lyrique*էն: ՓԵՐԻՆԵՐ, ԴԱՃԱՃՆԵՐ, ՀՈՒՐԻՆԵՐ, ՋԻՆ... ՆԵՐ, 150 հոգի բեմի վրայ: բեմադրութիւն՝ Պ. Ա. Շահխաթունիի կողմէ:

Պալէթ՝ ղեկավարութեամբ Michel Kotcharoffի.— Costumes, Հ. Ալեանաքի.— Մեծ նուագախումբ՝ ղեկավարութեամբ Հեղինակին.— Պատ... ներ հայկական կեանքէ:

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ.— 30, 20, 15, 10 եւ 7.50 ֆր.: Կը ծախուին՝ ճաշարան Ֆլօրիա՝* 61, rue Mr. le Prince, *Նպարավաճառ* Méridional 8, rue Chateaudun, *Նպարավաճառ* Yéprade (*Պէլվիլի շրջան*) 9, rue Jouye Rouve, *Վաճառատուն Հրաչ Սարգիսեան* 261 Fg. St. Martin Փ...

## Հ Ա Յ Կ Ա Կ Ա Ն   Օ Փ Ե Ր Է Թ

*Հայ "ՏՐԱՄ - ՕՓԷՐԷԹ" խումբը*

*Ղեկավարութեամբ դերասան Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆԻ*

ՎԵՐՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

*ՈՒՐԱԽ ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ*

10 յունուար *1932*, կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2.45ին *Maison de la Mutualité*ի սրահին մէջ *24 Rue St. Victor, Paris (V). Métro Maubert-Mutualité*

Արեւելեան երաժշտութիւն 12 հոգինոց օրքէստր ղեկավարութեամբ *ԹԱՌԻՍ ԺՕՐԺԻ*

Գ. Արարին Տիկ. Սուրաբեան կ'երգէ «ԱԶԵՐ ՍԵՒՈՐԱԿ» եւ կը պարէ կովկասեան լեռնական պարեր

**ՏՈՄՍԱԿՆԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ 20, 15, 10 ԵՒ 7.10 ՖՐԱՆՔ**

Տոմսերու համար դիմել «Յառաջ»ի խմբագրատունը, Գրատուն Հրանտ-Սամուէլ՝ 51 rue Mr. le Prince, Paris (6), ճաշարան Ֆլօրիա 61 rue Mr. le Prince, փարիզ (6), ճաշարան կովկաս՝ 23 rue de la Huchette, փարիզ (5), դերձակ փափազեան՝ 20 rue des Carmes, փարիզ (5), Լ. Նշանեան՝ 56 rue Piat, մէթրօ Պէլվիլ, փարիզ (20):

*Իսկ ներկայացման օրը թատրոնին կիշէն, որ կը բացուի ժամը 12ին*



ՏԻԿ. ՍՈՒՐԱԲԵԱՆ «ԱՍԻԱ» դերին













Imp. A. DER (Agopian)

17, Rue Damesme, Paris (10)

*Le Gérant H. STEPHAN*



Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ Հաւաքական խումբի ժողովը այս Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին, ծանօթ հաւաքատեղին։

## ԲՈՂՈՔԻ ՄԻԹԻՆԿ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

եղերամահ Հ. ճանիկեանի (վ.իտինեան) արիւնոտ դատին համար

Այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին, Թափի վերի սինէմայի սրահին մէջ։ Հովանաւորութեամբ Mr. Marius Masseի, Vice président du Conseil d'Arrondissementի եւ նախագահութեամբ Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆի։

կազմակերպուած հայ քաղ. կուսակցութեանց, 24 Հայր. միութեանց եւ 5 մշակութային կազմակերպութեանց խառն ժողովին կողմէ։

Ներկայ պիտի ըլլան ֆրանսացի բարձրաստիճան անձնաւորութիւններ, ֆրանսական թերթերու թղթակիցներ։ կը խօսին հայ քաղ. կազմակերպութեանց ներկայացուցիչները՝ կը հրաւիրուի հայ հասարակութիւնը։

Մ ո ւ տ ք ը ա զ ա տ է

## ՏՕՆԱԾԱՌ

Ա. Ե. Հ. կ. խաչի փարիզի «Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղի Այս կիրակի Maison Mutualitéի մէջ, 24 Rue St. Victor, Métro Maubert-Mutualité. Մասնակցութեամբ գայլիկներու եւ երէցներու։ Մանուկներու ներկայացում եւ խաղեր։ կաղանդ պապան նուէրներ կը բաժնէ։

Մուտքը ազատ է — Ծախսերու մասնակցութիւն 2 ֆրանք










Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (10)

*Le Gérant* *H. STEPHAN*










## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

«Սիփան» երկսեռ երգչախումբի կողմէ, ղեկավար՝ ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆ

*Պատրաստուեցէք եւ ապահովեցէք ձեր տոմսերը* — Նախօրօք՝ *12.50*, երեկոյթին գիշերը *15* ֆրանք

Այսօր շաբաթ իրիկուն, ժամը 9էն մինչեւ լոյս, Victor Hugoի շքեղ սրահներուն մէջ, 46 ter Rue St. Didier, մէթրօ Վիքթոր Հ. գեղարուեստական ձոխ բաժին

*Նոր պարեր՝* Օր. Մաքտոնալտի (Շաթլէի թատրոնէն) եւ իր քրոջ կողմէ։ *Պարեր երկսեռ խումբով եւ հայկական տարազով։ Անակնկալներ։ Պարերուն աչքը լոյս, եւրոպական պարեր կէս գիշերէն մինչեւ առաւօտ, մասնակցութեամբ* գոլիզէումի նշանաւոր Pesenti *նուագախումբի։*

*ԽՄԲԵՐԳ՝ Առաւօտեան բարի լոյս, Հով լինի՝ Կոմիտաս Վարդապետի, Հօյն Անուշ՝ Սպ. Մելիքեանի, Տանում են աղէջան, Ալագեազ, Խնկի Գ. Սիւնիի, Անձրեւն եկաւ, Շողեր Ջան, Եար Ջան ալի, Էս օր ուրբաթ է, Ջուր կուգայ, Սարէն եկաւ, Գնա գնա, Սոնա եար, եւ այլն։*

*ՍԻՓԱՆ երգչախումբը կը հրաւիրէ հասարակութիւնը խրախուսել իր ձեռնարկը։ Հայ երիտասարդներ եւ երիտասարդուհիներ անդամագրուեցէք «Սիփան» երգչախումբին։*

*Տոմսերու համար դիմել՝ «Յառաջ»ի, «Կավռօշ»ի, Գրատուն Հրանտ-Սամուէլ* (51 rue Mr. le Prince), *Ֆլօրիա ճաշարան, Լ. Նշանեան* (56 rue P.) *Նպարավաճառատուն Աւետիսեան* 28 rue de la Huchette, *Սարգիս Ստեփանեան* 8 rue Domat, *Սարգիս Գէորգեան* 24 rue St. Lazare.

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

*17 Յունուար կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին* **Salle de la Mutualité***ի մէջ*

**24, Rue St. Victor, Paris (5), Métro: Place Maubert-Mutualité**

*Վարժարանի Սանուց Միութիւնը կը կազմակերպէ Գեղարուեստական հանդէս մը*

բարեհաճ մասնակցութեամբ ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ, ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ, ՊՊ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ, Է. ՓԱՓԱԶԵԱՆԻ եւ ՏԷՎԷՃԵԱՆԻ

կ'երգէ վարժարանին *80* հոգինոց երգչախումբը, ղեկավարութեամբ Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ

կը բեմադրուի Ա. Պատմագրեանի յատկապէս այս հանդէսին համար պատրաստած «ՀԷՔԵԱԹ» մանկական երաժշտական պիէսը, որուն գլխաւոր դերը կ'երգեն Ռօզ Պատմագրեան, Պ. Պ. Փափազեան, Տէվէճեան եւ *Jacques BENOISTON, Théâtre Lyrique*էն։ ԾԱՂԻԿՆԵՐ, ԳԱՃԱՃՆԵՐ, ՀՈՒՐԻՆԵՐ, Ջինններ, *150* հոգի բեմի վրայ։ բեմադրութիւն՝ Պ. Ա. Շահխաթունիի կողմէ։

պալէթ՝ ղեկավարութեամբ Michel Kotcharoffի.— Costumes, Հ. Ալեանաքի.— մեծ նուագախումբ՝ ղեկավարութեամբ Հեղինակին.— Պատմութիւններ հայկական կեանքէ։

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ.— 30, 20, 15, 10 եւ 7.50 ֆր.։ Կը ծախուին՝ Ճաշարան Ֆլօրիա՝* 61, rue Mr. le Prince, *Նպարավաճառ* Méridio, 8, rue Chateaudun, *Նպարավաճառ* Yéprade (*Պէլվիլի շրջան*) 9, rue Jouye Rouve, *Վաճառատուն Հրաչ Սարգիսեան* 261 Fg. St. Martin Փ.

## Հ Ա Յ Կ Ա Կ Ա Ն Օ Փ Ե Ր Է Թ

*Հայ "ՏՐԱՄ - ՕՓԷՐԷԹ" խումբը*

*Ղեկավարութեամբ դերասան Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆԻ*

ՎԵՐՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ

# ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

*ՈՒՐԱԽ ՕՓԵՐԷԹ 4 ԱՐԱՐ*

10 Յունուար *1932*, կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ *2.45*ին *Maison de la Mutualité*ի սրահին մէջ *24 Rue St. Victor, Paris (V). Métro Maubert-Mutualité*

Արեւելեան երաժշտութիւն *12* հոգինոց օրքեստր ղեկավարութեամբ *ԹԱՌԻՍ ԺՕՐԺԻ*

Գ. Արարին Տիկ. Սուրաբեան կ'երգէ «ԱՆՏՐ ՍԵԽՈՐԱԿ» եւ կը պարէ կովկասեան լեռնական պարեր

ՏՈՄՍԱԿՆԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ 20, 15, 10 ԵՒ 7.10 ՖՐԱՆՔ

Տոմսերու համար դիմել «Յառաջ»ի խմբագրատունը, Գրատուն Հրանտ-Սամուէլ՝ 51 rue Mr. le Prince, Paris (6), ճաշարան Ֆլօրիա 61 rue Mr. le Prince, փարիզ (6), ճաշարան կովկաս՝ 23 rue de la Huchette, փարիզ (5), դերձակ Փափազեան՝ 20 rue des Carmes, փարիզ (5), Լ. Նշանեան՝ 56 rue Piat, մեթրօ Պէլվիլ, փարիզ (20)։

*Իսկ ներկայացման օրը թատրոնին կիշէն, որ կը բացուի ժամը 12ին*



Տիկ. ՍՈՒՐԱԲԵԱՆ «ԱՍԻԱ» դերին

## Հայկ. Ծնունդի երեկոյթ

Գեղարուեստական յայտագրով կազմակերպուած փարիզի Թամկավար-Ազատական ակումբին կողմէ, 6 Յունուար 1932, Չորեքշաբթի երեկոյ ժամը 8,45ին, Սօսիէթէ Սավանթի մեծ սրահին մէջ, 8 րիւ Տանթօն: Մէթրօ Օտէօն կամ Սէն Միշէլ:




Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (10)

*Le Gérant* ***H. STEPHAN***


## ՏՕՆԱԾԱՌ

Ա. Ե. Հ. Կ. Խաչի փարիզի «Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղի Այս կիրակի *Maison Mutualitéի* մէջ, *24 Rue St. Victor, Métro Maubert-Mutualité.* Մասնակցութեամբ գայլիկներու եւ արէցներու: Մանուկներու ներկայացում եւ խաղեր: կաղանդ պապան նուէրներ կը բաժնէ:

Մուտքը ազատ է — Ծախսերու մասնակցութիւն 2 ֆրանք

LE SEUL QUOTIDIEN ARMÉNIEN EN EUROPE

# ՅԱՌԱՋ

ՕՐԱԹԵՐԹ ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ

HARATCH

(Fondé en 1925) :-: R. C. Seine 276.286

Directeur et Propriétaire : Sch. Missakian
Rédaction & Administration
ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
17, Rue Damesme PARIS (13e)
Téléphone : Gobelins 19-78
(ԵՐԹԵՒԵԿԻ ՀԱՄԱՐ՝ Métro : TOLBIAC)

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ԳԱՅՄԱՆՆԵՐ,—

| | ՏԱՐԵԿԱՆ | ՎԵՑԱՄՍԵԱՅ | ԵՌԱՄՍԵԱՅ |
|---|---|---|---|
| Ֆրանսա եւ գաղութներ | 140 ֆրանք | 70 ֆրանք | 35 ֆր. |
| Անգլիա, Եգիպտոս, Զուիցերիա, Իտալիա | 250 » | 130 » | — |
| Ամերիկա | 8 տոլար | 5 տոլար | — |
| Ուրիշ երկիրներ | 200 ֆրանք | 100 ֆրանք | — |

ՈՒՐԲԱԹ 15 ՅՈՒՆՈՒԱՐ 1932
15 JANVIER 1932

Գին 50 ՍԱՆԹԻՄ

Ը. ՏԱՐԻ ԹԻՒ 1777

Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ՇՈՇՈՐԹԱՊԱՏՈՒՄ

Երեւանի փարիզեան կոչնակը բան-գործ ըրած է, սրտառո՛ւչ լրջութեամբ մը հրատարակութեան տալ բողոքի բանաձեւեր՝ «ընկ. Դ. Շահվերտեանի դէմ դաշնակ Բիւրոյի կողմէ կազմակերպուած տեռօրին» առթիւ:

Շաբաթը երեք օր, քանի մը փոփոխակներ լոյս կը տեսնեն այս գարշելի բանսարկութենէն, որուն հեղինակն ու խմբագիրն է հռչակաւոր Հօկը: Խեղկատակութիւնը բարեզարդելու համար, մարդիկ նոյնիսկ ժողովներ կը գումարեն, ճառ կը խօսին եւ յետոյ բանաձեւ կը քուէարկեն, որպէսզի արար-աշխարհ համոզուի, հաւատայ թէ Դաշնակցութիւնը խսկապէս մահափորձ կազմակերպած է Շահվերտեանի դէմ…

Թուրք թերթերն ալ այս գարշելի «շանթաժ»ը փորձեցին Ըսմէթ փաշայի ճամբորդութեան առթիւ: Բայց աւելի խելօք փրթան: Քանի մը օր գրեցին: Փորձեցին իրենց ուզած ելքը տալ դատական քննութեան: Իսկ երբ տեսան որ չափազանց վրան-բաց է սուտը, կարճ կապեցին եւ սկսան ուրիշ հաւկիթներ ածել:

Մինչդեռ մեր շոշորթները, որոնց գլուխը մազ-մօրուք ճերմկած …

## ՆԵՐԵԼԻ ՉԷ ԶԳԶԳԵԼ

## ԸՄԲՈՍՏՈՒԹԻՒՆԸ ԱՆԱՏՕԼՈՒԻ ՄԷՋ

### ՎԱԼԻ ՄԸ ՔԻՒՐՏԵՐՈՒՆ ՁԵՌՔԸ

Թուրք ընդդիմադիրներու փարիզի օրկանին *La République Enchaînée*ի թղթակիցը կը գրէ Էնկիւրիէն.—

Անշուշտ կարդացիք քէմալական մամուլին մէջ թէ մեծ տարողութեամբ գործողութիւն մը կը ծրագրուի արեւելեան նահանգներուն մէջ:

Այսուհանդերձ, նոյն այս մամուլը կը զգուշանայ ուժերու այս սփռումին պատճառները յայտնելէ:

Ահա թէ իրականութեան մէջ ինչ են այս արշաւին պատճառները: Տէրսիմ կը գտնուի Շէյխ Րիզան որ մեծ ազդեցութիւն եւ ժողովրդականութիւն ունի այդ շրջանի բնակչութեան մէջ: Այս է պատճառը որ Էլազիզի վալին՝ Նիզամէտտին քանիցս փորձեր էր զայն մէջտեղէն վեր- …

## ՄԱՀ ԿՈՐՏԸՆ ՊԵՐՐԻ

## ԷԻԴԻԼԷՐԵԱՆՆԵՐԸ ԿԸ ԳՈՐԾԵՆ

# ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

## ՆՈՐ ԿՌԻՒ ՖԻՔՍԻ ԳԱՂԹԱԿԱՅԱՆԻՆ ՄԷՋ

### Այր եւ կին տասը հոգի ձերբակալուած

*Անցեալ ուրբաթ օր Ֆիքսի հայ գաղթակայանին մէջ կռիւ մը տեղի ունեցած հայերու եւ յոյն ոստիկաններու միջեւ:*

*«Նոր Օր» հետեւեալ կերպով կը պատմէ կռիւին պարագաները (10 Յունվ).—*

Հայաստան գաղթողներու փարանկաները, Ֆիքսի մէջ գնած էին մասնաւորապէս Լավրիոնէն եկած աղքատ բանուորներ: Տեղւոյն յոյն սիլողոսին կողմէ ձեռք բերուած էր խնամատարական նախարարութենէն հրամանագիր մը, որով կ'արգիլուէր փարանկաներու առուծախը:

Ազգ. կեդր. վարչութիւնը իր կողմէն կատարած դիմումներուն իբրեւ արդիւնք՝ յայտարարած էր թէ վերոգրեալ որոշումը միայն պետական հողերու վրայ կառուցուած հողերու մասին է:

Մինչդեռ տեղւոյն ոստիկանութիւնը առանց խտրութեան, բազմաթիւ հայերու նոր գնած փարանկաները կը կնքէ եւ զանոնք փողոց կը ձգէ:

Այս անարդարութեան դէմ, վարչութիւնը սկսած էր օրինաւոր ճամբայով դիմումներ կատարել, նոյնպէս հեռագրով իր խնդրանքը իմացուցած էր վարչապետ Պ. Վենիզելոսին:

Մինչ այդ, Ֆիքսի մէջ գտնուած քանի մը խելագար փանջունիներ …

Ուրբաթ առաւօտ այդպէս ալ կը վարուին. քանդելով փակուած տուները ներս կը մտնեն: Բազմաթիւ ոստիկաններ վրայ կը հասնին եւ կոպիտ կերպով դուրս կը նետեն զանոնք. ընդդիմացողներէն ոմանք ծանրօրէն կը ծեծուին, իսկ ծեծուողները հայհոյութիւններով կը պատասխանեն ոստիկանութեան: Ձերբակալուած են ընդդիմացողներէն այր եւ կին տասը հոգիներ:

## ՖՐԱՆՍԱՅԻ ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ

### Պ. Փիէր Լավալ կազմեց դահլիճը

*Դահլիճին հաւաքական հրաժարումէն յետոյ, զոր Պ. Լավալ ներկայացուցեր էր հանրապետութեան նախագահին, կրկին իրեն յանձնուեցաւ նորին կազմութիւնը:*

*Նոր դահլիճը որ կազմուեցաւ մէկ քանի ժամուան խորհրդակցութենէ յետոյ, տարբերութիւն մը չունի նախորդէն: Հանգուցեալ պատերազմական նախարարին Մաժինոյի տեղը անցած է Պ. Թարտիէօ, երկրագործական նախարարը, որուն խօսքը կ'ըլլար արդէն: Հին դահլիճէն կը բացակայի միայն արտաքին նախարարը Պ. Պրիան:*

*Վարչապետութեան հետ արտաքին նախարարութիւնն ալ ստանձնած է Պ. Լավալ:*

*Իսկ ներքին եւ երկրագործական նախարարութիւնները յանձնուած …*

### Լօզանի ժողովին առաջ

### Գործադուլներ ցոյց կը կատարեն

## ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ՄԷՋ

## ԱՆԳԼԻՈՅ ՄԷՋ

## ԱՆՄԻՋԱԿԱՆ ՕԳՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐՈՒ

ՑԱՆԿ 10

| | |
|---|---|
| Գ. Ց. | 20.— |
| Ա. Խոնդկարեան | 25.— |
| Բժ. Տէր Դաւթեան | 10.— |
| Լ. Թ. | 30.— |
| Ա. Գաբրիէլեան | 20.— |
| Գումար՝ | 105.— |
| 9րդ ցանկին գումարը | 2333.— |
| Ընդհ. գումար | 2438.— |

## ՍՈՒՐԻՈՅ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Հալէպէն մեր սեփ. թղթակիցը հետեւեալ մանրամասնութիւնները կը հաղորդէ, Հալէպի ընտրութիւններուն մասին.—

## ՍՈՒՐԻԱՑԻՆԵՐՈՒ ԲՈՂՈՔԸ

Անգլիայէն նոր առաջարկ մը լուրը կուգայ: Ելմտական նախարարութիւնը եւ պետական գրամատունը համաձայնած են որ Լօզանի խորհրդաժողովը յետաձգուի 6էն 12 ամիս, նկատելով որ եւրոպական դրամատունքներ որ նկատելու չեն, պայմաններու մէջ կրնայ վճարել հարցին կուծման:

Կը կարծուի սակայն թէ այս յետաձգման պիտի տրուի վճարման նոր պայմանաժամի մը ձեւը: Նման պայմանաժամ մը ըստ անգլիական տեսակէտին, առիթ պիտի տայ որ վճարական խօսակցութիւնները տեղի ունենան նոր ընտրութիւններէն յետոյ, որոնք այս տարի պիտի կատարուին շահագրգռուած երկիրներու մէջ: Նաեւ ժամանակ պիտի տայ մասնագէտներուն որ վերջնական կարգադրութեան ծրագիր մը մշակեն:

Լոնտոնի մէջ, հետեւեալ կերպով կը ներկայանայ ուրեմն, հարցը: Գերմանիա յայտնած է իր տեսակէտը, որուն համաձայն պիտի առաջարկէ կարճատեւ յետաձգում մը: Այդ միջոցին պիտի մտածուի վերջնական կարգադրութեան մասին: Իսկ Անգլիա եւ Իտալիա ուժ պիտի տան գերմանական տեսակէտին:

Այս հարցին մասին, Անգլիոյ եւ Ֆրանսայի ելմտական նախարարութեանց միջեւ բանակցութիւնները կը շարունակուին: Անգլիոյ պատուիրակը այսօր մեկնեցաւ Լոնտոնէն Փարիզ, տեսակցելու համար Ֆրանսայի ելմտական նախարարին հետ:

Միւս կողմէ, նոյն հարցին մասին խորհրդակցելու համար, Իտալիոյ պատուիրակները արդէն հասած են Լոնտոն:

## Ռուսիոյ եւ Պուլկարիոյ պատրաստութիւնները

*Ֆրանսայի ծերակուտական երկու յանձնախումբերը՝ արտաքին եւ պատերազմական՝ մանրամասն տեղեկագիր մը լսեցին Պուլկարիոյ եւ Ռուսիոյ զինուորական կացութեան մասին: Յանձնախումբերը հաստատեցին թէ Պուլկարիա չէ կատարած միջազգային դաշինքներու պարտաւորութիւնները եւ թէ Ազգերու Դաշնակցութեան ներկայացուած ռազմական տեղեկագրերը չեն համապատասխաներ իրականութեան, որ ծածկուած է:*

*Գալով Ռուսիոյ, տեղեկատուներու քաղած ստոյգ լուրերը կը հաստատեն թէ բոլշեւիկները մեծ բանակ մը կազմակերպելու վրայ են Ուրալի եւ Արեւմտեան Սիպերիոյ միջեւ: Այս բանակը պիտի բաղկանայ 4 միլիոն հոգիէ, մէկ միլիոնը գործօն, մնացեալը երեք միլիոնը ուղղուած պահուն զօրակոչի ենթարկելի:*

## Սաստիկ տաք... Նիւ Եորքի մէջ

*Տաքութեան ալիք մը մը արշաւած է Նիւ Եորք, եւ կը շարունակուի քանի մը օրէ ի վեր: Յունուար 14ին ջերմաչափը կը ցուցնէր 68 աստիճան: Քաղաքին շատ մը մասերուն մէջ բազմաթիւ մարդիկ շապիկով կը պտտէին: Մէրիլէնտի մէջ տաքութիւնը բարձրացաւ 78ի: Նահանգին շատ մը մասերուն մէջ երկրագործները արդէն սկսած են իրենց գարնանային վարուցանք:*

*Քանատայի կարգ մը մասերուն մէջ ալ ջերմաչափը 50 աստիճանի բարձրացաւ: (Ֆարէնհայթ):*

## ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ

*ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ Հ. Յ. Դ. ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ*

*Այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Place Comète, (Անիէռ) ծխամաճառի վերնայարկը:*

*Կը խօսի՝ ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*

*Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրներ*

*Villiers*էն առնել իանրակառք 45 եւ իջնել փլաս քոմէթ (Անիէռի կարանին մօտ):

## ՊԱՆԵԼՕՅԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ՀԱՆԴԷՍԸ

### 21 Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ

*Կը խնդրուի ուրիշ միութիւններէ նկատի ունենալ այս թուականը*

Ա. Ե. Հ. Կ. Խ.Ի ՓԱՐԻԶԻ "ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ,, ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ՏԱՐԵԿԱՆ

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

տեղի կ'ունենայ *Յունուար 23ին Շաբաթ իրիկուն, ժամը 9ին, Salle p'Horticulture*ի *մէջ. 84 rue de Grenelle, métro rue du Bac.*

*Կը ներկայացուի Սուրաբեաններու կողմէ*

## ԱՊՈՒՇ (ՈՒՇ ԼԻՆԻ ՆՈՒՇ ԼԻՆԻ)

Հայկական զուարթ օփերէթը

*Արդիւնքի 100ին 25ը կը յատկացուի գործազուրկներուն*

*Կէս գիշերէն վերջ պարեր մինչեւ լոյս, ընտիր ճազ՝ Թառիստ* ֆօրժի *ղեկավարութեամբ: Ծոխ եւ մատչելի պիւֆէ, վիճակախաղ:*

*ՄՈՒՏՔ 10 ԵՒ 15 ՖՐԱՆՔ*

*Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի խմբագրատունը, Հրանտ-Սամուէլ գրատուն, Ֆլօրիա ճաշարանը եւ հանդէսին օրը կ'իշէն:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուին Խարբերդի Աշուան գիւղէն Արամ եւ Տաճատ Յակոբեանները, իրենց մօր անուն՝ Ծառա, հօր անուն՝ Մանուկ: Տարագրութեան միջոցին մայրերնին մեռած է եւ իրենք մնացած են Հալէպի եւ Ուրֆայի շրջանանակին մէջ գտնուող Սուրուճ գիւղը:*

*Իրենց մասին լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իրենց հօրեղբօր Պ. Յակոբեանի, 14 Rue Ortolan. Paris: Ճշգրիտ լուր տուողին 300 ֆրանք եւ մէկ տարեկան «Յառաջ» նուէր:*

*Կը խնդրուի սուրիահայ թերթերէն արտատպել:*

*— Պ. Տէյիրմէնճեան կը փնտռէ իր զաւակը Գէորգ-Տէտէ Տէյիրմէնճեանը Եօզկատի Չաթ գիւղէն: Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Ֆրանսա: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել* Garabed Djandjikian Chemin de Marmode, Villmomble (Seine) France.

Imp. A DER (Agopian)

17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant H. STEPHAN



## ԴՊՐՈՑԱՍԷՐՆԵՐԻ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

### Այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Salle de la Mutualitéի մէջ

### 24, Rue St. Victor, Paris (5), Métro: Place Maubert-Mutualité

### Վարժարանի Սանուց Միութիւնը կը կազմակերպէ Գեղարուեստական հանդէս մը

բարեհաճ մասնակցութեամբ ՌՕԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ, ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ, ՊՊ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ, Է. ՓԱՓԱԶԵԱՆԻ եւ ՏԷՎԷՃԵԱՆԻ

կ'երգէ վարժարանին 80 հոգինոց երգչախումբը, ղեկավարութեամբ Ա. ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ

կը բեմադրուի Ա. Պատմագրեանի յատկապէս այս հանդէսին համար պատրաստած «ՀԷՔԵԱԹ» մանկական երաժշտական բիէսը, որուն գլխաւոր դերը կ'երգեն Ռօզ Պատմագրեան, Պ. Պ. Փափազեան, Տէվէճեան եւ *Jacques BENOISTON, Théâtre Lyrique*էն: ԾԱՂԻԿՆԵՐ, ԴԱՃԱՃՆԵՐ, ՀՈՒՐԻՆԵՐ, ՋԻՆ[ՆԵ]ՆԵՐ, *150* հոգի բեմի վրայ: բեմադրութիւն՝ Պ. Ա. Շահխաթունիի կողմէ:

Պալէթ՝ ղեկավարութեամբ Michel Kotcharoffի.— Costumes, Հ. Ալեանաքի.— մեծ նուագախումբ՝ ղեկավարութեամբ Հեղինակին.— Պա[ր]ներ հայկական կեանքէ:

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ.— 30, 20, 15, 10 եւ 7.50 Ֆր.:*

Շանկհայի մէջ, անգլիական ուժերը ստիպուեցան բռնութեամբ օտարականներու թաղէն արտաքսել հոն ապաստանած Չինացիները:

Ֆրանսական թաղին վրայ ինկան ու պայթեցան մէկ քանի ռումբեր, առանց վնաս պատճառելու սակայն: Չի գիտցուիր թէ ռումբերը ո՞ւրկէ արձակուած են:

Հաւանական կը նկատուի որ ֆրանսական կառավարութիւնը Հնդկաչինէն նոր զօրք փոխադրէ Շանկհայ, պաշտպանելու համար իր հպատակները:

— Չինական կառավարութեան ներկայացուցիչը, Ազգերու Դաշնակցութեան խորհուրդին ներկայացուց զեկուցագիր մը, որով կը պահանջէ Ազգերու Դաշինքին 10 եւ 15րդ յօդուածներուն կիրարկումը չինեւճափոնական վէճին մէջ: 10րդ յօդուածին տրամադրութեամբ, Ազգերու Դաշնակցութեան անդամները յանձն կ'առնեն արտաքին որ եւ է յարձակման դէմ պաշտպանել բոլոր անդամներու քաղաքական անկախութիւնն ու հողային ամբողջութիւնը: 15րդ յօդուածին համաձայն, խորհուրդը կը խմբագրէ եւ կը հրատարակէ տեղեկագիր մը, պարզելով վէճին պարագաները եւ լուծման եղանակները.

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ԾԱԽՈՒԻ ՓԱՐԻԶԻ ԵՒ ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ

### ՓԱՐԻԶ

| | |
|---|---|
| 1.— ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ Գրատուն | 51, Rue Monsieur-le-Prince: |
| 2.— ՍԷՆ ՄԻՇԷԼ | 7, Boulevard Saint-Michel-ի դիմացի քէօշկը |
| 3.— ՕՏԷՈՆ | 5, Carrefour de l'Odéon |
| 4.— ՔԱՏԷ | Մէթրօ Քատէյի մուտքի քէօշկը |
| 5.— ՄՈՆՄԱՐԹՐ | 59, Fbg. Montmartre-ի դիմացի քէօշկը |
| 6.— ՓԼԱՍ ՏԷ ՖԷԹ | Մէթրօյին դիմացի քէօշկը |
| 7.— ՐԷՊԷՎԱԼ | 92, Rue Rébéval |
| 8.— ՊԷԼՎԻԼ | 19, » de Belleville |
| 9.— ՓԱԼԻՔԱՕ | 3, » Palikao |
| 10.— ՍԷՆ - ԼԱԶԱՐ | Քաֆէ Թէրմինիւսի անկիւնի քէօշկը |

### ԱՐՈՒԱՐՁԱՆ

| | |
|---|---|
| 11.— ԻՍԻ - ԼԷ - ՄՈՒԼԻՆՕ | Գրավաճառ l'Ecriture. 13, Boul. Gallièni |
| 12.— ՊԻՅԵԱՆՔՈՒՐ | Գրավաճառ Օֆէնիա, Փլաս Նասիօնալ: |

Հ. Յ. Դ. Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը այս Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին:

## ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՖՈՒԹՊՈԼ

Այսօր Կիրակի «Արարատ» մարզականի Ա. խումբը պիտի մրցի Stade Enghien Ermonts Licencie B խումբին դէմ St. Gratien-ի մէջ (33 Avenue de Soisy) ժամը 2.45:

Մարզիկներու ժամադրութիւնն է Gare du Nord ժամը 1ին, մեկնում ժամը ճիշդ 1.30ին, իջնել Champs du Course d'Anghien.

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Օրտուի Գօշաճա գիւղէն Մարիամ Համալեան, որ Ամերիկա գացած է 1918ին Բժ. Ալվազեանի հետ: Կը խնդրուի իր հասցէն տեղեկացնել Նշան Երոյեանի, 10 Rue François Garcin Lyon: «Հայրենիք»էն ու Ամերիկայի թերթերէն կը խնդրուի արտատպել:

— Կը փնտռուի Պիլէճիքցի (Պրուսա) Փօլ Աւետեան 22-23 տարեկան, ամուրի: 8 տարիէ ի վեր Ամերիկա կը գտնուի: Ճշգրիտ հասցէն տուողին 500 ֆրանք նուէր: Իմացնել՝ Garabed Avedian-ի, 40 Rue Pomme-de-Pin, Toulon (Var). Կը խնդրուի Ամերիկահայ թերթերէն արտատպել.

— Լոնտոնէն կը փնտռուի Միհրան Զաքմաքճեան, Տարսոնցի, 50 տարեկան: Ունի անգլիացի կին մը, Gertrude, զաւակ մը՝ Լայընէլ Տըկլաս Հէյկ 7—8 տարեկան: Ծնողքին անունը՝ Աբրահամ եւ Մարիցա: Գրել Friends of Arménia, 47 Victoria St. London, S. W. 1.




Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)

Le Gérant · H. STEPHAN




## Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ
GYMNASE JAURÈS-ի մէջ, Փարիզ
21 ՓԵՏՐՈՒԱՐ, ԿԻՐԱԿԻ, ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ

Բոլոր կազմակերպութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

## «ՃԳՆԱՒՈՐ»ԻՆ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
**MAISON DE LA MUTUALITÉ**-ի մէջ
24 Rue St. Victor, Paris (5) (Métro Maubert-Mutualité)
6 ՓԵՏՐՈՒԱՐ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ
Հովանաւորութեամբ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

Տիկ. Սուրաքեան, Օր. Անահիտ, Տիկ. Ժ. Շահ-Պարոնեան, Օր. Աթանասեան, Օր. Ս. Քօլմանօֆ, Օր. Սօֆի Քօլմանօֆ Պ.Պ. Կոթիկեան, Սարաֆեան, Տէրվիշեան, Հայ-Վարդ, Կ. Սրապ եւ Գմբէթեան կ'արտասանեն, կ'երգեն, կը նուագեն: Գեղարուեստական բաժինը կը տեւէ մինչեւ կէս գիշեր:

ՕՄԱՐ ԽԱՅԵԱՄԻ ՔԱՌԵԱԿՆԵՐԸ, ԳՐԻԶ Է...
եւ ՓԱՐԻԶԱՀԱՅ ՌԸՎԻՒ

Կէս գիշերէն մինչեւ առաւօտ շքեղ պարահանդէս
Եւրոպական օրքէսթր ղեկավարութեամբ Թաոխա ժօրժի
Քօթիյեօնի առարկաներ, ճոխ պիւֆէ մատչելի գիներով
ՄՈՒՏՔ՝ 10 ՖՐԱՆՔ

Տոմսերը կը ծախուին ամէն տեղ եւ կավռօշի խմբագրատունը՝ 208bis Rue Lafayette, Paris (10).

## ՊԱՆԵԼԷՕՅԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ՀԱՆԴԷՍԸ
21 Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ

Կը խնդրուի ուրիշ միութիւններէ նկատի ունենալ այս թուականը

## Աղքատախնամին ցերեկոյթը

Փարիզի Աղքատախնամի ընկերութեան տարեկան մեծ ցերեկոյթ՝ պարահանդէսը այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր:

ՇԱՆ ԶԷԼԻԶԷԻ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ, 79 ԱՎԸՆԻՒ ՏԷ ՇԱՆ ԶԷԼԻԶԷ

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ հայ եւ օտար արուեստագէտներու: երգ, նուագ եւ զանազան հաճելի անակնկալներ:

Պարերու համար առաջնակարգ «Pizaro» նուագախումբը եւ ճազ: Պրիճի սեղաններ: Դիւրամատչելի ճոխ պիւֆէ:

ՄՈՒՏՔԸ 25 ՖՐԱՆՔ

Տոմսերը կը ծախուին հայկական ճաշարաններու եւ Rue de Trévise-ի հայ նպարավաճառներու մօտ:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ
## 1932Ի ԱՄԵՆՈՒՆ ՀԱՍՑԷՆ

Հայերու հասցէներ Փարիզի եւ շրջաններու, Մարսէյլի, Լիոնի, Տէսինի, Պորտոյի, Վալանսի. Նիսի, Սէն-Շամոնի, Սէն Թ'Էթիէնի, Կրընոպլի, Շարվիէօյի եւն., ինչպէս նաեւ Անգլիոյ, Պելճիքայի, Իտալիոյ, Գերմանիոյ, Զուիցերիոյ, Աւստրիոյ ու Չեխօսլովաքիոյ: Ասկէ զատ Ֆրանսահայ գաղութին հասցէները դասաւորուած ըստ արհեստներու: Ամենուն համար անհրաժեշտ գիրք մը: Ընդամէնը՝ 256 էջ, մաքուր տպագրութեամբ:

Գինն է միայն 6 ֆր., փոստի ծախքով 7.50: Արտասահման 10 ֆրանք: Դիմել.— L. Mozian, 5 Rue Champlain, Paris (20).